# ՆՈՐ ՏԱՐՎԱ ԳԻՇԵՐ

ՀՈՎՀԱՆՆԵՍ ԳՐԻԳՈՐՅԱՆ

Նկ. Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Եվ մի գիշերում
Ճերմակեցին բոլոր տանիքները քաղաքի
Ու բոլոր փողոցներն ու ծառերը:
Հեքիաթային ու զարմանալի այս օրվա վերջում
Պիտի հրաշք լինի.
Անխուսափելի պիտի մեծանանք մենք՝ բոլորս.
Ե՛վ մեր դպրոցի տարեց պահակը,
Որը կարծես թե
Մեծանալու էլ ցանկություն չունի,
Ե՛վ փոքրիկ տղան մեր հարևանի,
Որն էլ հույս չունի, որ կմեծանա,
Դպրոց կգնա,
Ու այդ պատճառով
Չար-չար է նայում բոլոր մեծերին:
Պիտի մեծանան ծառերը անգամ
Ու անտառները հեռավոր ու մոտ,
Եվ գազանները, որ անուն ունեն,
Ու նաև նրանք, որոնք դեռ չունեն...

Եվ թող այս գիշեր
Ինչ որ լինում է, թող ուրախ լինի.
Զյան փաթիլների, քամու երգի հետ
Թող ուրախություն իջնի քաղաքի
Մայթերի վրա,
Ծառերի վրա
Ու անտառների՝ հեռու և մոտիկ:
Եվ մնա մեզ մոտ՝ աշխարհի վրա,
Թեկուզ մի գիշեր,
Որ մեզ բոլորիս՝
Տարեց պահակի, փոքրիկ տղայի,
Ձյունոտ ծառերի, անտառների հետ՝ մոտ ու
հեռավոր,
Գազանների հետ, որ անուն ունեն
Եվ նաև նրանց, որոնք դեռ չունեն,
Նա էլ մեծանա՝
Խաղաղությո՜ւնը...

# ՎԵՐՀՈՒՇ

ԱՐՇԱԼՈՒՅՍ ՄԱՐԳԱՐՅԱՆ

Ձմեռն ուրիշ գեղեցկություն,
Ձմեռն ուրիշ խորհուրդ ուներ,
Ճերմա՜կ, ճերմա՜կ մի բարություն,
Ծածկում էր դաշտ ու անտառներ:
Հին խրճիթում մեր գյուղական
Վառարանն էր տաստ վառում,
Եվ սրտերում մեր մանկական
Մի տաք կրակ էր ճարճատում:
Եվ հավասար բաժանում էր
Նա մեզ մի բուռ չիր ու չամիչ,
Եվ աշխարհը լիանում էր
Ունեցածով մեր այդ փոքրիկ,
Հեքիաթի մեջ էր առնվում
Պարզ օջախը մեր աղքատիկ,
Սակայն հարուստ էինք այնքան,
Աշխարհն էր՝ մենք ու մի տատիկ:
Ձմեռն ուրիշ հմայք ուներ,
Ծննության մեջ մեր լավատես,
Եվ մանկությունն էր մեր ճախրում
Հեքիաթի լույս աղավնու պես:

# ՍԱՀԱԴԱՇՏ

*ՄԿՐՏԻՉ ԿՈՐՅՈՒՆ*

(Ըստ էստոնացի բանաստեղծ Վաարանդիի)

Դրսում վայում է հողմը մոլեգին
Ճերմակ բող հյուսած ծառ ու թփերին,
Այդ սաստիկ բուք ու սառնամանիքին
Լսվում է կանչը ժիր մանուկների.
— Թեկուզ և ձյունը հասնի երկնքին,
Հո չէ՞նք թողնելու մեր խաղն անավարտ...—
Այդ է հաստատում ժպիտը դեմքին՝
Նրանց մոտեցող բարեսիրտ մի մարդ:
Շրջապատում են բոլորը նրան,
Ծիծաղ ու կատակ չորս կողմից տեղում,
Իսկ այն բարեդեմ մարդը աննման
Բոլորից առույգ, բարձր է ծիծաղում.
— Ի՞նչ փույթ, թե բուք է, ցուրտ է, մանուկնե՛ր,
Ի՞նչ փույթ, թե ձյունն է նստել ծնկահար,
Թե ձյուն կա, չէ՞ որ կան և թիակներ,
Եկե՛ք սահադաշտ բանանք մեզ համար...—
Ու ամեն մեկը մի գործ է անում,
Լայն սահադաշտ են պատրաստում արագ,
Սակայն և ոչ ոք դեռ չի իմանում,
Թե ո՞վ է արդյոք մարդն այդ հասարակ...

Ցերեկը խաղով անցնում է արագ,
Ու տուն են դառնում մանուկները հաշտ,
Առույգ ու զվարթ, դեմքերով կրակ
Եվ դրսում թողած մի լավ սահադաշտ:
Գիշեր է վաղուց և պաղշունչ քամին
Ձյան սավաններն է շուռ ու մուռ տալիս,
Իսկ մանուկների բարեկամ քեռին
Արթուն է նորից, քունը չի գալիս:

Նա, որ սահադաշտ պատրաստեց սիրով,
Մանուկների հետ վազվզեց խնդուն,
Լցվել է հիմա հազար խոհերով
Ու քայլում է լուռ փոքրիկ խրճիթում:
Քնած մանուկներն ինչպե՞ս իմանան,
Որ Իլյիչն իրենց խոր սիրով լցուն
Ամեն օր մինչև ուշ գիշեր նստած
Գալիք օրերի ուղին է գծում:





**Սովետական Միության պատանի պիոներների կազմակերպությանը մեծ պատիվ վիճակվեց. 1924 թվից մեր երկրի պիոներական կազմակերպությունը կոչվեց աշխատավորների մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինի անունով: Անցել է 50 տարի: Մեր երկրի պատանի լենինյանների կազմակերպությունը պատրաստվում է տոնելու այդ փառապանծ անվանակոչության 50-ամյակը: Այն, ինչ դուք կկարդաք ստորև, գրվել և հրապարակվել է 50 տարի առաջ, Սովետական Միության պիոներական կազմակերպությունը մեծ առաջնորդի անունով կոչվելու առթիվ:**

# ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՄԲ

## ՌԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԲՅՈՒՐՈՅԻ ՆԱՄԱԿԸ

*13-ը փետրվարի, 1924 թվական*

### ԲՈԼՈՐ ԳԱՎԿՈՄՆԵՐԻՆ, ՄԱՐԶԿՈՄՆԵՐԻՆ, ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԲՅՈՒՐՈՆԵՐԻՆ

Թանկագին ընկերնե՛ր:

ՌԿԵՄ Կենտկոմի պլենումը որոշեց Սպարտակի անվան պիոներական կազմակերպությունը վերանվանել Լենինի անվան պատանի պիոներների կազմակերպության:

Պիոներական կազմակերպությունների համար այդ որոշման իմաստի ու նշանակության մեկնաբանումը պետք է ընկնի պիոներների հետ տարվող աշխատանքի հիմքում: Աշխատանքի հիմնական խնդիրը՝ պիոներներին ծանոթացնել Լենինի կյանքին, աշխատանքին, պայքարին ու պատգամներին, և իբրև դրա հետևանք, ամրապնդել, համախմբել և հեղափոխականացնել մանկական պիոներակա՞ կազմակերպություններն այնպես, որ Լենինի գործը նրանց մեջ անհրաժեշտություն առաջացնի հետևել իրենց գաղափարական առաջնորդին:

ՌԿԵՄ Կենտկոմն այդ նպատակով առաջարկում է հետևյալ ձևակերպմամբ լրացնել պիոներների հանդիսավոր խոստումը.

1. Ամուր կպաշտպանեմ բանվոր դասակարգի գործը. ամբողջ աշխարհի բանվորների և գյուղացիների ազատագրման համար մղվող պայքարում:

2. Ազնվորեն ու աննահանջ կըկատարեմ պատանի պիոներների օրենքներն ու ավանդույթները և Իլյիչի պատգամները:

Ընկ. Լենինի գործի և պայքարի լուսաբանումը պետք է ընթանա հետևյալ ուղղությամբ.

1. Լենինի վերջին տարիների գործունեությունը, հիվանդությունը, բուժումը, մահը:

2. Վլադիմիր Իլյիչի կյանքի ու պայքարի հիմնական շրջանները (նրա կենսագրությունը):

3. Լենինը և երիտասարդությունը: Լենինը և երեխաները:

4. Լենինի դերը որպես ռուսական և համաշխարհային պրոլետարիատի առաջնորդի: Նրա պատգամները:

5. Պիոներները ինչու պետք է կրեն Լենինի անունը:

Պիոներ-լենինյանների խնդիրները: Հանձնարարված աշխատանքը պետք է կատարել հետևյալ կերպ.

1. Հանձնարարված թեմայի շուրջը պատանի պիոներների ջոկատներում անցկացնել խորհրդակցություն:

2. Կուսակցության հին անդամների ելույթներն ու հիշողությունները շրջանային և քաղաքային հավաքներում:

3. Լենինի հիշատակին նվիրված երեկոների կազմակերպումը:

4. «Իլյիչի անկյան» կազմակերպումը շրջանային և ջոկատային պիոներական ակումբներում:

5. Պիոներների գրադարանների համալրում Լենինի մասին գրըված գրքերով...

...Կոմպանիայի հետևանքը պետք է լինի ՍՍՀՄ բոլոր պատանի լենինյան կազմակերպությունների համախմբվածությունը, հեղափոխական վերելքի բարձրացումը և որոշակի ազդակ հետագա աշխատանքում, որի համար Կենտկոմը առաջարկում է լուրջ ուշադրություն դարձնել հանձնարարված աշխատանքին, լրացուցիչ նախապատրաստական աշխատանք տանել երեխաների շարժումը ղեկավարող կադրերի շըրջանում:

# ԿՈՉ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԱՏԿՈՄ. ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ԲՈԼՈՐ ԳԱՎՇՏԱԲՆԵՐԻՆ, ԿՈԼԵԿՏԻՎՆԵՐԻՆ, ՕՂԱԿՆԵՐԻՆ ԵՎ ԲՈԼՈՐ ՊԱՏԿՈՄՆԵՐԻՆ

Հունվարի 21-ին մեռավ մեր մեծ Ուսուցիչն ու Ղեկավարը՝ Վլադիմիր Իլյիչ ՈՒԼՅԱՆՈՎ-ԼԵՆԻՆԸ:

Երկարատև հեղափոխական աշխատանքը, բանվորության ազատագրման համար թափած ճիգն ու ջանքը քայքայեցին նրա ուժերը և դեռ այնքան վաղ, 54 տ. հասակում նրան գերեզման տարան:

Բուրժուազիան ուրախանում է այդ կորստի առթիվ և սպասում է մեր շարքերի քայքայմանը:

Բայց մեր մեծ ընկերների հետ մենք կպատասխանենք նրան. *«Իլյիչը մեզ սովորեցրել է չվախենալ, չհուսահատվել, այլ հաստատ քայլերով ու խիտ շարքերով մեր նպատակին դիմել»:*

*Մենք կկատարենք Իլյիչի այդ պատգամը:*

Պատանի կոմունարնե՛ր:

Իլյիչի· ղեկավարությամբ, Կոմ. կուսակցության երկարատև պայքարով հաստատվեց բանվորա-գյուղացիական իշխանություն:

Կոմերիտմիությունը համակվեց Իլյիչի նկատմամբ անդրդվելի հավատով և դարբնեց իր մեջ երկաթե կամք կոմունիզմի պայքարում:

Իլյիչի կյանքի ընթացքում աճեցին ու զարգացան պատանեկական կոմուն. խմբակները, նրա մեծ գաղափարներին հետևելով:

Շատ է աշխատել և մտահոգվել Իլյիչը երեխաների ու պատանիների վիճակով: Նա միշտ հրահրել է, լայնացրել, կանոնավորել դպրոցներն ու մանկատները:

Ո՞ր մանուկը, ո՞ր պատանին չի լսել Լենինի անունը, չի տեսել նրա պատկերը, չի սիրել իր և իր աշխատավոր ծնողների պաշտպանին, բարեկամին՝ Վլ. Իլյիչին:

Արևելքի և Արևմուտքի ամենախուլ անկյուններում, երկրագնդի բոլոր ծայրերում Լենինն ունի իր փոքրիկ բարեկամները, հետևողները:

Աշխատավոր գյուղացու և բանվորի երեխաները էլ ավելի լավ և մոտ պիտի ճանաչեն Լենինին: Պատանի կոմունարնե՛ր, առաջին հերթին դուք եք կատարելու այդ:

Թող ամեն մի կոլեկտիվ ու ամեն մի օղակ կարդա, լսի, ուսումնասիրի Իլյիչի կյանքը, գործունեությունը, աշխատանքը:

Հիմնի իր ակումբում, դպրոցում կամ շտաբում Լենինին հատկացրած սրահ, թանգարան, անկյուն, ուր կհավաքի մեծ Ուսուցչի հետ կապ ունեցող նկարներ, գրություններ, արձաններ, գրքեր, լրագրեր և այլն:

Թող ամեն մի պատկոմ հետաքրքրվի ու իմանա՝ ի՞նչ էր անում, որտե՞ղ և ինչպե՞ս էր ապրում Վլադիմիր Ուլյանովը իր հասակում:

Թող Լենինի անունը պարծանքով կրեն իրենց վրա մեր կազմակերպության լավագույն օղակները. «Լենինյան մրցանակները» թող նոր եռանդ և ուժ ներշնչեն մեր ընկերներին:

Գյուղերի, հյուղերի, փողոցների, գործարանների, արհեստանոցների երեխանե՛ր ու պատանինե՛ր, մանկատան սանե՛ր ու դպրոցական աշակերտնե՛ր:

Հավաքվեցե՛ք պատանեկական կազմակերպության շուրջը, մտե՛ք նրա շարքերը:

Լենինի անունը թող ոգևորի ձեզ, միացնի *Խ. Ֆեդերացիայի սահմաններում ապրող բոլոր պատանիներին Լենինի անվան միասնական պատանեկ. կազմակերպության մեջ:*

Մենք այսուհետև կրելու ենք մեր մեծ Ուսուցչի անունը մեր դրոշակի վրա:

Արժանի լինենք այդ մեծ անվանը:

Պատկոմնե՛ր, հրավիրեցե՛ք ձեր շարքերը աշխատավոր ծնողների բոլոր երեխաներին, դեռատի բանվորներին:

Ոգևորե՛ք ձեր ծնողներին, անդրդելի՛ պահեք նրանց մեջ վառ ապագայի հավատը:

Ձեզ են նայում և ձեր օրինակին են հետևելու ամբողջ աշխարհի աշխատավորների երեխաները:

Պատկոմնե՛ր, ձե՛ռք տվեք նրանց, «Մի՛շտ պատրաստ» եղեք օգնելու հեղափոխական պայքար տանող բանվորին ու գյուղացուն:

Պատկոմական կարմիր դրոշների տակ համարձակ ու հաստատ գնացե՛ք Իլյիչի գծած ուղիներով դեպի համաշխարհային հաղթանակ:

*Հայաստանի պատկ. Լենինի անվան կազմակերպ.*

*ԿԵՆՏ. ՇՏԱԲ*

*«Պատկոմ», 1924 թ. № 7:*

# ՈՂՋՈ՜ՒՅՆ, «ՊԻՈՆԵ՛Ր», ՈՂՋՈ՜ՒՅՆ, «ԾԻԾԵՌՆԱ՛Կ»

Հոկտեմբերի 28-ին Սունդուկյանի անվան թատրոնում նշվեց «Պիոներ» ամսագրի գոյության 50-ամյակը: Իրենց ամսագրի հոբելյանը նշելու էին եկել ամսագրի տարբեր տարիների ընթերցողներ՝ ալեհեր պապիկներ ու տատիկներ, երիտասարդներ, պիոներներ:

Հանդիսավոր նիստը ներածական խոսքով բացեց ՀԼԿԵՄ Կենտկոմի առաջին քարտուղար Ռ. Արզումանյանը: «Պիոների» անցած ուղու մասին զեկուցեց ամսագրի գլխավոր խմբագիր Անահիտ Սահինյանը: Ողջույնի ջերմ, սրտառուչ խոսքով հանդես եկավ ամսագրի լավագույն բարեկամը՝ գրող Վախթանգ Անանյանը: Հոբելյարին ողջունեցին Հայկական ՍՍՀ լուսավորության մինիստրի տեղակալ Ս. Ծարիֆովը, «Հայաստան» հրատարակչության գլխավոր խմբագիր Վ. Բալայանը, «Պիոներ-կանչ» թերթի պատասխանատու քարտուղար Ս. Փարսադանյանը, վաստակավոր ուսուցչուհի Վ. Եսայանը: Ջերմ խոսքեր ասացին Հայկական ՍՍՀ ժողովրդական նկարիչ Գ. Խանջյանը, բանաստեղծ Հ. Շիրազը, մանկագիր Մ. Կորյունը: Լենինգրադի «Կոստյոր» ամսագրի գեղարվեստական խմբագիր Մ. Բելոմլինսկին ընթերցեց «Կոստյորի» խմբագրության ողջույնի ուղերձը: Ադրբեջանական «Պիոներ» ամսագրի անունից ողջունեց բաժնի վարիչ Ջ. Քյազիմովը:

Հուզիչ էր Շահումյանի պիոներների պալատի սաների ողջույնը: Նրանք դահլիճ մտան շեփորի հնչյունների ներքո, պիոներական ալ կարմիր դրոշը պարզած, հանդիսավոր շարասյուներով:

Ահա նրանց ողջույնի խոսքը.

Տոնական զվարթ երգեր են հնչում՝
Շունչ տալով զնգուն մեր շեփորներին,
Պիոներական բոցավառ ողջո՜ւյն
Հիսուն տարեկան մեր «Պիոներին»:

Օ՜, մեր հոբելյա՛ր,
Ամեն հոբելյար
Երնեկ քեզ նման երջանիկ լիներ,
Որ սերունդներին ուսուցիչ դառնար
Եվ ինքը նորից մնար պիոներ:

Դու ես այն բարի կախարդը կյանքում,
Որ արձակում է ջերմություն ու լույս,
Եվ ինչքան շատ է տալիս, բաժանում,
Այնքան ավելի դառնում է հարուստ:

Թմբուկ չես զարկում, շեփոր չես փչում,
Բայց ամեն կողմից պաշարում ես մեզ,
Թեև դու երբեք ձայնով չես կանչում,
Բայց մենք քո ձայնից ճանաչում ենք քեզ:

Մեր խորհրդատու, մեր լավ բարեկամ,
Դու էլ մեզ նման ալ վզկապ կապող,
Բայց քո վզկապը պիոներական
Չես փոխում երբեք ուրիշ փողկապով:

* * *

Եկավ մայրիկս ասաց ինձ մի օր.
— Ես «Ծիծեռնակ» եմ գնել քեզ համար:—
Ես էլ ասացի. — Մայրի՛կ ջան, մայրի՛կ,
Ե՛կ լավ բույն շինենք թռչնակիս համար:—
Մայրս ծիծաղեց, իսկ ես հասկացա,
Որ այդ թռչնակը փետուրներ չունի,
Եվ իր թևավոր մտքերի համար
Նրան անուն են տվել թռչունի:
Եվ այդ օրվանից
Շատ «Ծիծեռնակներ» եկան մեր տունը.
Իմ սրտի մեջ է այդ բարի՜, բարի՜
Թռչնակի բույնը:

«Ծիծեռնակից» ենք լսում, սովորում
Առաջին տառը, հեքիաթն առաջին,
Մեր ականջները սիրով ենք պահում
Մեր «Ծիծեռնակի» հարազատ կանչին:

Հավքերը նորից հարավ են չվում,
Աշուն են հագնում փողոցն ու բակը,
Բայց ամեն ամիս մեր դուռն է թակում
Գարնան պես սիրուն մեր «Ծիծեռնակը»:

* * *

Մեր լա՛վ «Պիոներ»,
Մեր լա՛վ «Ծիծեռնակ»,

Դուք՝ մանուկներին խաղընկեր ու գիրք,
Այդքան կամավոր ընթերցող չունի
Հրատարակվող ոչ մի դասագիրք։

Մանուկ սերնդի ընկեր, բարեկամ,
Դուք առաջնորդի պատգամներն առած,
Ինչպես զինվորը պոստում մարտական,
Ջգոն հայացքով նայում եք առաջ։

Կանգնել եք հիմա ճամփին մի վայրկյան՝
Հայացքը պայծառ գալիքին հառած...
— Պատվի՛ առ, սերո՛ւնդ պիոներական,
Քո «Պիոների» սխրանքի առաջ։—
Դուք մեր կապտավուն երկնքում անծիր
Մեզ համար եղաք լուսատու մի աստղ,
Մեր հայրենիքի սրբազան կանչին
Ձեզ հետ միասին կասենք՝ «Մի՛շտ պատրաստ»։

Հայաստանի նկարիչների միությունը իր խոսնակի՝ ժողովրդական նկարիչ Գրիգոր Խանջյանի միջոցով նորելյարին հանձնեց հետևյալ ողջույնի խոսքը, գեղարվեստական այսպիսի ձևավորումով։

Թանկագին բարեկամներ

Հայաստանի Նկարիչների Միության նախագահությունը [illegible] Ձեզ «Պիոներ» և «Ծիծեռնակ» ամսագրերի [illegible]

[illegible]

Հայաստանի Նկարիչների Միության Նախագահություն.

23 Հոկտեմբերի
1973 թիվ
ք. Երևան



Լենինգրադի «Կոստյոր» ամսագիրը, որի հետ վաղուց բարեկամական սերտ կապերի մեջ է մեր «Պիոները», իր խոսնակի՝ «Կոստյորի» գեղարվեստական խմբագիր Բելոմլինսկու միջոցով նվեր էր ուղարկել Պղնձե հեծյալի մի արձանիկ և ողջույնի չափածո այս խոսքը, Պղնձե հեծյալի և Սասունցի Դավթի սիմվոլիկ նկարներով ձևավորված:

"П И О Н Е Р У" ПЯТЬДЕСЯТ!
ПОЗДРАВЛЯЕТ МЛАДШИЙ БРАТ !

Мы все в редакции "Костра"
Кричим : "Ура,ура,ура!"
Теое "ура":
нам старший брат,
Нам давний друг хороший.
"Костёр" твоим успехам рад
и юбилею тоже!
Реоята знают с давних пор:
Повсюду неразлучно-
Где пионер,там и костёр,
И,значит,там не скучно.
И "Пионеру" в юбилей
Мы скажем дружным хором:
"Живи,дружище,веселей,
Спеши в долины,в горы,
В отряд,дружину и звено.
Повсюду ждут тебя давно!"
И мы от северных снегов
Гонцом на дружбу и любовь
От всех читателей "Костра"
Шлём представителем Петра.
Он-Первый,значит-пионер.
Пусть невелик его размер,
Но настоящий Медный Всадник
Послал его на этот праздник.
Он тоже юбилею рад
И ждёт вас в гости в Ленинград.





# ՀԻՍՈՒ՛Ն ՏԱՐԵԿԱ՛Ն «ՊԻՈՆԵՐԻ՛Ն» ՄԵՐ ՇՆՈՐՀԱՎՈՐՈՒՄ Է ԵՂԲԱՅՐԸ ԿՐՏՍԵՐ

*Այսոր քոլորս «Կոստյոր» հանդեսում*
*Քեզ «ուռա՛, ուռա՛, ուռա՛» ենք ասում:*
*«Ուռա՛»՝ենք ասում,*
*քեզ, եղբա՛յր ավագ,*
*Դու մեր վաղեմի բարեկամ, ծանոթ,*
*«Կոստյորն» ուրախ է քո հաջողությամբ,*
*Քո հոբելյանո՛վ:*
*Երեխաները գիտեն ամենուր.*
*Մենք անբաժան ենք այս արևի տակ,*
*Որտեղ՝ պիոներ, այնտեղ էլ՝ խարույկ:*
*Եվ ուրախություն անսահմանափակ:*
*Ու մենք «Պիոներ» մեր հոբելյարին*
*Ասում ենք այսօր սիրով համերաշխ.*
*Երջանիկ լինես քո ճանապարհին,*
*Սլանաս դեպի ծոր, անտառ ու դաշտ:*
*Ամեն տեղ հիմա հարազատ որպես*
*Օղակ ու ջոկատ սպասում են քեզ:*
*Իսկ մենք «Կոստյորի» ընթերցողներից,*
*Մեր հյուսիսային ձյուներից մաքուր,*
*Պատգամավոր ենք ճամփում Պետրոսին՝[1]*
*Բարեկամության թունդ երկրպագու:*
*Նա Առաջինն է: Պիոներ է: Պարզ է:*
*Ու թեև փոքր է եկողի չափսը,*
*Բայց ուղարկել է նրան դասական*
*Ինքը՝ «Պղնձե հեծյալն» իսկական:*
*Ձեր լավ հանդեսով ուրախ է այնպես,*
*Ու մեր քաղաքն է հյուր կանչում նա ձեզ:*

---

Ծ. Խ.—Խոսքը «Պղնձե հեծյալի»՝ Պետրոս Առաջինի այն արձանի մասին է, որ «Կոստյորի» խմբագրությունը, ողջույնի խոսքի հետ, նվեր է ուղարկել «Պիոներին», նրա 50-ամյակի տոնակատարության առթիվ:

# Թույլն ու ՈՒԺԵՂԸ

ԶՈՐԱՅՐ ԽԱԼԱՓՅԱՆ





Մանուկն առաջին անգամ էր մրջյուն տեսնում: Նրա համար դա մի շարժուն կետ էր, հետաքրքիր էր ու զարմանալի: Հետաքրքրությունից մոտեցավ, հետաքրքրությունից կռացավ, նայեց երկար, և գուցե հենց հետաքրքրությունից էր՝ ոտքը դրեց մրջյունի վրա:

— Մեղք է,— ասաց մի երեխա,— ինչո՞ւ սպանեցիր:

Մանուկը խոսել չգիտեր, չէր հասկանում, թե ինչ է «մեղք»-ը, մրջյունի սպանությունը անգիտակից մի հանցանք էր, որ կատարվեց: Բայց նախատող երեխայի արտահայտությունից նա հասկացավ, որ իր արածը դատապարտելի է:

— Դմբլո՛,— ասաց երեխան ու մատով կտտացրեց մանկան ճակատին:

Մանուկը նեղացավ ու լաց եղավ:

Մեկ ուրիշ երեխա տեսավ այդ:

— Քեզնից փոքրին ծեծում ես, չես ամաչո՞ւմ: Դու մանկապարտեզի երեխա ես, իսկ նա՝ մսուրի,— ասաց և անարդարությունը պատժելու համար՝ խփեց մանկապարտեզի երեխայի գլխին:

Մանկապարտեզի երեխան լաց եղավ, սկսեց բռունցքով տրորել աչքերը:

Հեռվում ավազ տարիքի աղջիկները գնդակ էին խաղում, նրանցից մեկը լսեց լացի ձայնը, մոտեցավ, հարցրեց.

— Քեզ ո՞վ ծեծեց, Վահանի՛կ:

— Նա,— մատով ցույց տվեց լացողը:

Աղջիկը ավելի տարիքով էր, ծեծողին նախատեց.

— Քեզնից փոքրին է ուժդ պատում: Քեզ ի՞նչ արեց, որ խփեցիր:

— Որովհետև նա իրենից փոքրին ծեծեց: Չէ՞ որ չի կարելի:





— Իսկ դու ինչո՞ւ քեզնից փոքրին խփեցիր, չէ՞ որ դա էլ չի կարելի,— ասաց աղջիկը և իր հերթին խփեց ծեծողի գլխին:

Սա էլ լաց եղավ: Աղջիկը ցանկացավ հեռանալ, մեկը բռնեց նրա ձեռքը:

— Կա՛ց,— ասաց այդ մեկը, որն ավելի տարիքով մի տղա էր:— Ինչո՞ւ ծեծեցիր այն տղային: Նա քեզ ի՞նչ արեց:

— Ինձ՝ ոչինչ: Նա ծեծել էր իրենից փոքրին: Ես էլ դաստիարակչական նպատակով պատժեցի նրան:

— Իսկ դու չգիտե՞ս, որ փոքրին խփելը ստորություն է: Ա՛ռ քեզ, որպեսզի չմոռանաս:

Հիմա էլ աղջիկը սկսեց տզզալ:

Ծնողը տեսավ, մոտ կանչեց այն տղային, ասաց.

— Իմ աղջկան ինչո՞ւ ծեծեցիր, և առհասարակ դու ո՞վ ես, ի՞նչ գործ ունես մեր բակում:

— Ես անցնում էի փողոցով,— ասաց տղան,— տեսա, որ ձեր աղջիկը տանջում է իրենից փոքրին: Ասացի, որ չի կարելի, ուրիշ ոչինչ:

— Դեռ ստում էլ ես: Ինքս տեսա, որ դու իմ երեխային խփեցիր: Հավանաբար նայիր, երևի ութերորդում ես սովորում:





— Յոթում,— ասաց տղան:

— Միևնույն է: Իսկ նա՝ հինգում: Առնվազն երկու տարով մեծ ես, դու ո՞նց ձեռք բարձրացրիր նրա վրա:

Վերջին խոսքի հետ աղջկա մայրը ձեռքը հարվածի համար վեր բարձրացրեց:

— Մորաքո՛ւյր,— հուզվեց տղան,— մորաքո՛ւյր, չխփե՛ք: Չէ՞ որ ես ձեզնից փոքր եմ, փոքրին չի կարելի խփել:

Կինը ապտակեց տղային: Տղան, ճիշտ է, լաց չեղավ, բայց նրա այտը կարմրեց ցավից, աչքերը արցունքներով լցվեցին:

Անծանոթ մի մարդ սաստիկ խղճաց նրան:

# ՀՐԱՉՅԱ ԱՃԱՌՅԱՆԻ ՀԵՏ

ԳԱՌՆԻԿ ՍՏԵՓԱՆՅԱՆ

Ոչ մի հայ գիտնականի շուրջ, այն էլ դեռևս կենդանության օրոք, այնքան աշխույժ հետաքրքրություն չի ստեղծվել, նրա հետ կապված դեպքեր, անեկդոտներ չեն պատմվել, որքան Աճառյանի: Բանական թվականների սկզբներից մարդիկ միմյանց պատմել են այդ «տարօրինակ» մարդու կյանքից զվարճալի մանրադեպեր, որոնք հետագայում հավաքվել են, գրի առնվել մի քանիսի, այդ թվում՝ Աճառյանի կողմից:

Նման մանրադեպեր պատմվում ու տարածվում են բացառիկ մեծությունների կամ անհատականությունների մասին, հաճախ ուրիշների հետ պատահածներն էլ վերագրելով նրանց: Այդպես է համաշխարհային գրականության մեջ Բերնարդ Շոուն:

Աճառյանին վերաբերող մանրադեպերը, որոնք մեծ մասամբ իրական են, երևան են հանում նրա զարմանալի աշխատասիրությունը, ճշտապահությունը, գիտական համոզմունքների մեջ ունեցած համառությունը, հետևողականությունը, սրամտությունը, լավատեսությունը, միաժամանակ՝ պարզամտությունը, անսահման բարությունը, անհիշաչարությունը, գծեր, որոնք ի մի գումարած՝ բացահայտում են մարդուն ու գիտնականին:

Սկիզբը՝ 1973 թ., №№ 1, 2, 8, 10, 11

## ԱՇԽԱՏԱՍԻՐՈՒԹՅՈՒՆ, ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՌԵԺԻՄ

Նրա առաջին յուրահատկությունը բացառիկ *աշխատասիրությունն* էր: Նրա հրատարակած ու անտիպ երկերի թիվը անցնում է մի քանի հարյուրից, իսկ ընդհանուր ծավալով կարող է կազմել ավելի քան 10.000 էջ: Այս բոլորը նա գրել է, մաքրագրել, մի մասն արտագրել ապակետիպի համար:

Նա կարդացել է մեր ամբողջ մատենագրությունը, Էջմիածնի մատենադարանի հարյուրավոր ձեռագրերը, հաճախ դրանք համեմատել է տպագիր օրինակների հետ, կատարել ճշգրտումներ,



— Ձեր երեխա՞ն է,— հարցրեց նա:

— Ո՛չ, ես այդպիսի երեխա չունեմ,— ասաց կինը:

— Այդ դեպքում՝ ինչո՞ւ եք ծեծում ուրիշի երեխային: Մի՞թե վայել է ձեր տարիքի մարդուն՝ ձեռք բարձրացնել երեխայի վրա: Ծատ էլ նրանից ուժեղ եք:

— Քաղաքացի՛,— ասաց կինը,— գնացե՛ք ձեր ճանապարհով, ձեզ չի վերաբերում:

— Ո՛չ, ձեր արարքը հակահասարակական է, բոլորիս է վերաբերում: Եթե ամեն ուժեղ իրենից թույլին ծեծի՝ ո՞ւր կհասնի,— ասաց անցորդը:

— Ի՞նչ եք ուզում ասել,— բորբոքվեց մյուսը:— Որ ինձանից ուժե՞ղ եք: Եթե իմ ամուսինը այստեղ լիներ՝ այդպես չէիք խոսի ինձ հետ:

— Չար կին...— ասաց անցորդը,— բռնում ծեծում է մի անմեղ երեխայի:

Այդ ժամանակ մայթեզրին մոտիկ կանգ առավ մի ավտոմեքենա, ներսից դուրս եկավ մի հաղթանդամ մարդ, քայլեց դեպի անցորդը:

— Ընկե՛ր,— կանչեց նա:

Նա տեսել էր, ինչպես այդ մեկը վրա էր քշում մյուսին: Իսկ ինքն այնպիսի մարդ էր, որ չէր կարող անտարբեր անցնել, երբ մի որևէ ուժեղ մարդ վրա է քշում մի որևէ թույլ մարդու, եթե անգամ երկուսն էլ անծանոթ են իրար: Նա միշտ թույլի կողմն էր բռնում:

Հաղթանդամն ու անցորդը վեճի բռնվեցին...

Մինչ այդ, մրջյունիկը, որ մանկան կրնկի տակ թաղվել էր հողի մեջ՝ ուշքի եկավ, կողմնորոշվեց արևի լույսով և կրկին գնաց դեպի իր բույնը:

Դա ձվից նոր ելած մի փոքրիկ մրջյունիկ էր, աշխարհից ոչինչ չէր հասկանում: Հանդիպեց մի տարեց մրջյուն:

— Մի մանուկ ինձ ոտքով տրորեց,— բորբոքվեց մրջյունիկը:

— Պատահում է,— ասաց տարեցը, որ աշխարհ տեսած, փորձառու մրջյուն էր:

— Ո՞նց թե պատահում է,— ավելի բորբոքվեց նորեկը,— այդ մանուկն ի՞նչ է, որ ինձ տրորի ու գնա: Ես պետք է գտնեմ նրան ու կծեմ:

— Ո՛չ,— ասաց տարեցը,— մրջյունը պետք է մեծահոգի լինի:



ուղղումներ: Կարդացել է հազարավոր գրքեր, մեծ մասամբ մասնագիտական, այն էլ 6—7 լեզուներով՝ հայերեն, ռուսերեն, ֆրանսերեն, անգլերեն, գերմաներեն, հունարեն և այլ լեզուներով: Աչքի է անցկացրել հայ ծոխ պարբերական մամուլը՝ հարյուրավոր օրաթերթեր, ամսագրեր, հանդեսներ և քաղել է անհրաժեշտ նյութ: Փոքր տարիքից չի իմացել ինչ բան է հոգնելը: Աշխատել է մինչև աչքերը փակվելը, հաճախ իր նյութի հետ շարունակելով ապրել նաև քնի մեջ: Պատմում էր, որ լեզվաբանական իր լավագույն ստուգաբանություններից շատերը կատարել է կեսքուն վիճակում և իսկույն էլ գրի է առել, որպեսզի չմոռանա: Այսպես, նա իր տիկնոջ հետ Լենինգրադ գնալիս՝ ճանապարհին, կեսքուն վիճակում ստուգաբանել է հայերեն Սեդա անունը:

— Երևակայեցեք,— պատմում էր խանդավառությամբ,— կարծեք հանկարծ ուղեղումս գրվեց արաբերեն seyda «տիրուհի» բառը:

Լենինգրադում առաջին գործը լինում է իր գյուտը հայտնել ակադեմիկոս Օրբելուն, որը տալիս է իր հավանությունը: Վերադառնալով Երևան, նա գրի առավ այդ ստուգաբանությունը և հանձնեց ինձ՝ ակադեմիայի «Տեղեկագրում» տպագրելու: «Հայկականք» ընդհանուր խորագրով տպագրված այդ հոդվածում էլ նա գրում է. «Հաճախ պատահել է ինձ, որ երբ մի բառի ծագումը որոնել եմ և չեմ գտել, միտքս ինձնից անկախ աշխատել է և մի օր էլ հանկարծ պատասխանը թելադրել է ինձ»:

Երբ «Տեղեկագրի» տպագրված համարը հանձնեցի, ասաց.

— Ստեղծագործելու ամենից հարմար պահերից մեկը հանգստի ժամն է, երբ մեր ուղեղը բեռնաթափված է լինում օրվա տպավորություններից:

Աճառյանը իր ստեղծագործական բեղմնավորությունը բացատրում էր ոչ միայն աշխատասիրությամբ, *այլև աշխատանքային ռեժիմի խիստ պահպանմամբ:* Ասում էր, թե մարդ եթե օրական երկուս ու կես էջ գրի, տարեկան անում է մոտ հազար էջ, այսինքն քառասուն մամուլանոց մի գիրք, իսկ հիսուն տարի ստեղծագործողը իր դարակում կունենա հիսուն հատոր աշխատություն: Կան մարդիկ, ասում էր, որոնք մի օր գրում են 10—15 էջ, բայց մի քանի շաբաթ, հաճախ մի քանի ամիս, ոչինչ չեն գրում: Նրանք չեն կարող արդյունքի հասնել:

Ինքը խստագույնս հետևում էր իր օրվա ռեժիմին: Նրա աշխատանքային ժամերից չէին կարող խլել անգամ ամենամոտիկ մարդիկ: Երկար տարիներ նրա բնակարանում հեռախոս չի եղել, միայն վերջին բնակարանում ունեցավ: Մանկական ինչպիսի՜ հրճվանքով օրհնում էր հեռախոսի գյուտն անողին, որ կասեցնում էր նախապես չպայմանավորված այցելությունները: Զայրանում էր, երբ մարդիկ գալիս էին առանց զանգահարելու: Ժամանակի արժեքը չիմացող այդ մարդկանց պատժում էր շատ յուրովի. «Էհ, մի քիչ նստեցեք, հիմա կվերջացնեմ»,— ասում էր ու շարունակում աշխատել: Բայց չէ՞ որ դա ոչ նամակ էր և ոչ էլ մի կարճ դիմում, որ իսկույն վերջացներ, իր գիտական ընթացիկ զբաղմունքն էր, որ սկիզբ էր առել 90-ական թվականներից, ավարտվելու էր կյանքի հետ:

Պատմում են, որ մի օր առանց զանգահարելու նրա տունն է գալիս մի տիկին և դուռը ծեծում: Աշխատանքը ընդհատելով, Աճառյանը դուռը բացում է: Կինն ասում է, թե ուղիղ հինգ րոպե կխլի նրանից, եկել է, որ ինչ-որ բան հարցնի: Եվ ծեքծեքումներով հանում է վերարկուն, հայելու առաջ կանգնում հարդարվում, մազերը դասավորում... Աճառյանը, որ ժամացույցը ձեռքին կանգնած հետևում էր սլաքների ընթացքին, ուղիղ հինգ րոպե հետո ասում է.

— Է՜, տիկի՛ն, ձեր խնդրած հինգ րոպեն լրացավ, ես պետք է աշխատեմ:

Ասում է ու նստում գրասեղանի առաջ...

Իրակա՞ն է այս դեպքը, թե՞ հնարված: Եթե անգամ հնարված է, Աճառյանին ճանաչող բոլոր մարդիկ կարող են վկայել, որ շատ բնորոշ է նրան:

Հիշում եմ ինքս այսպիսի մի դեպք. կարծեմ 1947 թ. էր: Հազիվ էինք վերջացրել մեր զրույցը, ուզում էի մեկնել և նա էլ պատրաստվում էր աշխատել, երբ դռան զանգը տրվեց: Եգիպտոսից ներգաղթած մի ընկեր էր. ասաց անուն-ազգանունը, արաբերենի մասնագետ լինելը և որ գիտե ֆրանսերեն ու անգլերեն:

Մինչ մարդը միջանցքում ներկայացնում էր իրեն, Աճառյանը լուռ լսում էր, առանց նրա՛ն ներս հրավիրելու: Հետո հանկարծ հարցրեց.

— Իսկ ի՞նչ եք ուզում:

— Ինձ ուղարկել են, որպեսզի իմ արաբերենի գիտելիքներից, հայտնեք ձեր կարծիքը, որպեսզի ինձ աշխատանքի ընդունեն:

— Անշուշտ դուք ինձնից լավ արաբերեն պիտի իմանաք, քանի որ Եգիպտոսում արաբական կրթություն եք ստացել, ապրել եք տասնյակ տարիներ: Ես ի՞նչ իրավունք ունեմ ձեզ ստուգելու: Ներողություն, հիմա իմ աշխատելու ժամն է,— կարճ կապեց նա:

Մարդը լուռ մեկնեց:

Բայց սիրում էր լսել՝ արդեն զուտ գործնական նկատառումով: Բանավոր խոսքը նրան մեծ նյութ էր տալիս հատկապես բարբառների ուսումնասիրման համար: Սիրում էր մասնավորապես աշխատավոր, անգրագետ կամ կիսագրագետ մարդկանց հետ զրույցի բռնվել, առիթ տալ,

որ նրանք իրենց բարբառով խոսեն:

— Գրական լեզվով խոսողներից ինձ օգուտ չկա,— ասում էր:

Մի անգամ Աբովյանով իջնելիս նկատում է մի խումբ դասախոսների, բոլորն էլ տարբեր գավառներում ծնված: Նրանց մեջ են եղել Հայկ Գյուլիքեխյանը, Ցոլակ Խանզադյանը, Հակոբ Մանանդյանը, Աշխարհբեկ Քալանթարը և ուրիշներ: Մոտենում է նրանց, բարևում ու լսում նրանց զրույցը. ավելի քան մեկ ժամ նրանք խոսում են, վիճում, իսկ ինքը միայն ունկընդիր կանգնում է, առանց խոսքի բռնվելու: Հանկարծ ասում է.

— Էհ, ես գնացի, մի ժամ խոսեցիք, ինձ անծանոթ մի բառ չլսեցի, ափսոս ժամանակիս:

Ահա իրական դեպք ևս. մի օր վիճում է իր տիկնոջ՝ Սոֆիկի հետ, արհեստականորեն բորբոքում վեճը, այնքան բարձր բղավում, որ կինը հուսահատ սկսում է լաց լինել: Աճառյանը դրան էլ կարևորություն չի տալիս, շարունակում է: Հանկարծ ընդհատում է վեճը, փափկում և խանդաղատանքով ասում.

— Կատա՜կ էր, Սոֆի՛կ, ուզում էի, որ ջղայնացած խոսես և տեսնեմ, թե Ախտայի բարբառում ինձ համար ի՞նչ անծանոթ բառեր կան:

— Դե ասեիր էլի, ինչո՞ւ էիր կռիվ սարքում:

— Չէր ստացվի: Դու կխոսեիր գրական լեզվով: Մարդիկ զայրացած ժամանակ են բարբառի դիմում և իրենց բերնից փախցնում բառեր, որոնք կարող են պետք գալ լեզվաբանին: Իզուր էլ զայրացրի, ոչ մի բառ չասացիր...

Աճառյանը աշխատասիրությունը հասկանում էր այդ բառի լեզվաբանական ընկալումով. ասում էր, թե աշխատասիրություն ամենից առաջ նշանակում է աշխատանքը սիրել, կատարել հաճույքով, գոհունակությամբ, գտնել թարմացում նրա մեջ: Երբ մի քանի ամիս լարված աշխատում էր որևէ գրքի վրա և հոգնում, միանգամից ընդհատում էր այն և շարունակում մի այլ կիսատ գործ, մեկ աշխատում էր որևէ բարբառի վրա, մեկ՝ «Լիակատար քերականության» կամ «Անձնանունների բառարանի»:

Նախասովետական տարիներին այնքան զրկանքներ կրած, երկրե-երկիր թափառած, պատերազմի ու գաղթի սարսափներ տեսած գիտնականը ուներ կամքի բացառիկ ուժ ու լավատեսություն: Մարդու ամենամեծ դժբախտությունը ծուլությունն ու տգիտությունն էր համարում, նաև հոռետեսությունը, կյանքի դժվարություններից ընկճվելը: Ասում էր, թե ամեն ինչից դժգոհ մարդը ամենափարթամ կյանքի մեջ էլ կգտնի տրտնջալու, նվնվալու առիթներ, իսկ լավատես մարդը ամենաաննպաստ պայմաններում էլ չի կորցնի հոգու արիությունը և կհաղթահարի ամեն դժվարություն:

Անշուշտ ճիշտ էր նրա ասածը: Բայց նրա լավատեսությունը չափազանց էր: Ահա մի դեպք նրա լավատեսության մասին:

Կենտգործկոմի նախագահ Անանյանը, լսելով նրա «Արմատական բառարանի» մասին, ցանկանում է մեկ օրինակ ունենալ: Իրավաբան Գր. Ջուքարին խնդրում է օգնել այդ հարցում: Վերջինս ճարում է բառարանի վեց մեծադիր հատորները, տալիս բեռնակրին և տանում Կենտգործկոմ:

— Այս ի՞նչ է,— ասում է Անանյանը,— ես խնդրել էի մեկ օրինակ:

— Հենց այս բոլորը մեկ օրինակ է,— պատասխանում է Ջուքարը,— վեց հատոր է, ամեն մի հատորը 1200—1300 էջ:

Անանյանը ծանոթանալով վիթխարի գործին ու լսելով Ջուքարի վկայությունը դրա համաշխարհային արժեքի մասին, ցանկանում է հեղինակին մոտիկից ճանաչել, գուցե և օգտակար լինել:

Աճառյանը Ջուքարի հետ ներկայանում է Անանյանին:

Կենտգործկոմի նախագահը արժանի հարգանքով ընդունում է լեզվաբանին, հայտնում իր հիացմունքը բառարանի մասին, ապա հարցնում է, թե ինչո՞վ կարող է նրան օգտակար լինել, նա ի՞նչ բանի կարիք ունի:

— Ոչ մի բանի,— պատասխանում է Աճառյանը:

— Հարմար բնակարան ունե՞ք,— հարցնում է նա:

— Ունեմ, շատ էլ գոհ եմ: Իմ բնակարանը Ձեր այս սենյակից ավելի լուսավոր է:

— Մթերքի՞ էլ կարիք չունեք:

— Չունեմ, որոշ բան ինքս եմ ճարում, որոշ բան էլ, փող եմ տալիս, աշակերտներս բերում են:

— Սանատորիա գնալ չե՞ք ուզում:

— Հիվանդ չեմ, որ սանատորիա գնամ: Առողջ մարդու համար դա ժամավաճառություն է:

— Հանգստյան տու՞ն էլ չեք ցանկանում գնալ, Ծաղկաձոր կամ Ախթալա:

— Արածս ինչ է, որ հանգըստանալու կարիք ունենամ, հենց որ հոգնում եմ, թախտի վրա մի քիչ պառկում եմ, հանգստանում, ապա նորից շարունակում աշխատանքս:

— Վերջապես ոչ մի բանի կարիք չունե՞ք:

— Ոչ մի բանի:

Անանյանը կամաց Ջուքարին ասում է.

— Ահա մի մարդ, որ իրենից էլ գոհ է, մեզնից էլ:

Աճառյանը այս ասում էր անկեղծորեն, ասում էր այն դեպքում, երբ ամեն օր հարկադրված էր բակում փայտ կոտրել, դրանք բարձրացնել վեր, վառարան վառել, «Արմատական բառարանի» տպագրված մամուլները թևի տակ տանել բաժանորդներին: Այդ բոլորից հետո, երբ թիթեղյա վառարանի ճարճատյունի առաջ նստած հանգստանում էր, նրան թվում էր, թե իսկապես իրենից երջանիկ մարդ չկա ու չի կարող լինել:

*(Շարունակելի)*

# ՎԵՐՋԻՆ ՕՐՎԱ ՎԵՐՋԱԼՈՒՅՍԸ

(Գիտա-ֆանտաստիկ պատմվածք)

ՀԱՅԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Նա հոգնած էր, և հոգնածությունն ու պարտքը կատարած լինելու հրաշալի զգացումը նրան անընդհատ ուրախություն էին պատճառում: Էկրանին թրթռկտող գույների գամման սքանչելի պատկերներ էր ստեղծում, և նա հաճույքով ըմբոշխնում էր լույսի շողերից հյուսված մեղեդին: Իսկ ուղեղի խորքում բոլոր գույներից ու մեղեդիներից հեռու ծանր ու խուլ աղմկում էին հիշողությունները հայրենի մոլորակի մասին: Նա այլևս չէր վախենում ամբողջովին հիշողություններին տրվելուց: Վաղվանից այս մոլորակն էլ հիշողություն կդառնա: Լեռան տակ արդեն պայթյուն է նախապատրաստել, և ընդամենը մի օր հետո լեռն այլևս գոյություն չի ունենա: Դրանից հետո կհրահանգավորի ռոբոտներին ու կթռչի:

Նրա ուղեղում գույներն ու մեղեդին խառնվեցին հիշողություններին, և աչքին երևացին լեռներ, ձորեր, անտառներ: Կանաչ ձորակով հոսում էր աշխույժ գետակը: Գետակի ափերին խոնարհ շարվել էին ամաչկոտ ուռենիները, որոնց բարակ ճյուղերը կախվել էին ուղղակի ջրի մեջ: Կաղնիների ու բարդիների հարևանությամբ կանգնած էր փայտաշեն խրճիթը: Խրճիթի կողքին, հյութալի կանաչ խոտի մեջ նստոտել էին գառները: Նրանցից ոչ հեռու պառկել էր փոքրիկ մի տղա, որ լայն բացված աչքերով վերև էր նայում և փորձում էր խիտ տերևածածկույթի միջով տեսնել երկինքը: Ո՜հ բարի ծերուկ մոլորակ, որքան էր երազում աստղերի մասին: Իսկ հիմա իր տունն է ուզում, իր գետակն ու իր փոքրիկ գառներին: Այն ժամանակ ինքը չէր զգում, թե որքան է սիրում դրանք, և միայն աստղերը կարողացան ուղեղի ամենահեռավոր անկյուններից գտնել այդ թաքնված սերը: Այն ժամանակ միայն, երբ դրանք պակասեցին իր կյանքից, նա հասկացավ, որ գետափի ամենափոքր հողակտորն ավելի է սիրում, քան ցանկացած աստղը, ցանկացած համաստեղությունը…

Մտքում նորանոր պատկերներ էին հայտնվում, սակայն նա արդեն մի բան էր տեսնում միայն. փոքրիկ տղան նստել էր գետափին, բոբիկ ոտքերն իջեցրել ջրի մեջ ու խորոված կաղին էր ուտում: Քիչ հեռվում մայում էին գառները, երկնքից կանաչ խոտի անձրև էր գալիս, իսկ հեռու-հեռու մի տեղից սրնգի ձայն էր լսվում: Հետո ինչ-որ տեղից հայտնված դղրդյունն ամեն ինչ խառնեց իրար, խոտի անձրևը կտրվեց, և շրջապատը դարձավ չափազանց փխրուն ու թափանցիկ…



Նա ապշահար կանգ առավ դեպի հովիտ իջնող կածանի վրա: Տեսածի անսպասելիությունը մի պահ նրան զրկեց մտածելու ընդունակությունից, և նա առանց որևէ բան հասկանալու նայում էր Բ—13 աստղի կապտավուն ճառագայթների տակ հպարտորեն շողշողացող աստղանավին: Նա երբեք նման աստղանավ չէր տեսել, և սիրտն ուժգնորեն բաբախեց բոլորովին անծանոթ աշխարհի այդ պատվիրակի առաջացրած հուզմունքից:

Սկզբում դանդաղ, ապա ավելի ու ավելի արագ նա սկսեց իջնել դեպի հովիտը: Մտքում անընդհատ նախադասություններ էին ծնվում, որոնցով նա ուզում էր ողջունել հյուրերին, հետո հասկացավ մտադրության միամտությունն ու ծիծաղեց:

Նրա ծիծաղն ընդհատվեց նույնքան անսպասելիորեն, ինչպես սկսվել էր: Նրա հայացքը դիպավ անծանոթ աստղանավից ընդամենը մի քանի տասնյակ մետր հեռավորության վրա փորված հորատանցքին, և նա չկարողացավ զսպել հառաչանքը: Ամբողջ մարմնով զգաց այն ամենի սարսափելիությունը, որը կատարվելու էր: Նա ցավից կծեց շրթունքը…

«Կկործանվեն, անպայման կկործանվեն: Լեռը կփլվի նրանց վրա, և ոչ մի ուժ ի վիճակի չի լինի փրկել նրանց… Ինչո՞ւ են հենց մահվան երախի մոտ վայրէջք կատարել: Մոլորակն այնքա՜ն մեծ է… Ինչո՞ւ հենց այս պահին և հենց այստեղ…»

Նա անզոր կատաղությամբ սկսեց գոռալ աստղանավի ուղղությամբ: Նա բղավում էր, որ անհրաժեշտ է հեռանալ լեռան ստորոտից: Անհապա՜ղ…

Աստղանավը կենդանության նշաններ չէր ցույց տալիս:

Հանկարծ նրա ուղեղում մի խելացնոր միտք ծնվեց: Իսկ եթե ինքը փորձի փրկել նրա՞նց: Չէ՞ որ ինքը կարող է անել դա: Բավական է միայն իրարից հեռացնել ուրանի կտորները, որոնք երեկ այնտեղ են տարել կապարե արկղերով:

Ի՞նչ հիմարություն, որտեղի՞ց էլ հայտնվեց այդ խելառ միտքը: Առանց պաշտպանական հագուստների, մերկ ձեռքերով… Չէ՞ որ դա անխուսափելի մահ է… Զգաց, որ սիրտն սկսեց սովորականից ավելի արագ ու խուլ բաբախել: Նրան թվաց, թե շրջապատի օդը չափազանց չոր է, խեղդամահ անելու աստիճան չոր ու տաք: Նայեց աստղանավին, նայեց հորատանցքին, և սիրտն սկսեց ավելի ուժգին բաբախել: Նայեց ժամացույցին ու ակամա արագացրեց քայլերը…

Չէ, ինքը չի անի այդ, չի գնա մեռնելու: Իրեն արդեն սպասում են տունն ու լեռնային գետակի մոտ գտնվող անտառակը: Դրանք ոչնչի հետ փոխել հնարավոր չէ: Եվ չի փոխի…

Ո՞րտեղից էլ հայտնվեցին այս օտարաստղացիները: Գոնե վայրէջքի իրավունք խնդրեին, գոնե զգուշացնեին, գոնե… Թե չէ իջան առանց մի խոսք ասելու, իսկ հիմա արի ու փրկիր: Ասենք, ինքն ամենևին էլ պարտավոր չէ անել դա: Չէ՞ որ եթե հանկարծ խելքին չփչեր մի վերջին անգամ էլ նայել կանգուն լեռանը, ապա չէր գա այս կողմերը և չէր տեսնի: Ասենք թե չի տեսել…

Այսինքն, ինչպե՞ս թե: Բայց ինքը տեսել է:

Հետո՞ ինչ: Ո՞վ գիտե, որ ինքը տեսել է նրանց: Ոչ ոք չգիտե, ոչ մի շնչավոր արարած…

Ուրեմն ինքն ուրիշների գիտենալու համա՞ր էր ուզում փրկել նրանց: Զարմանալի է, թե ինչպես է ինքը կարողանում նման բաներ մտածել: Դա զզվելի է:

Նա արագացրեց քայլերը: Նրան թվում էր, թե տեղ կհասնի հենց ռեակցիան սկսվելու պահին: Նրա մարմնով սարսուռ անցավ…

«Իսկ եթե նավում մարդ չկա՞: Չէ՞ որ այն արդեն շատ վաղուց է վայրէջք կատարել, և մինչև հիմա կենդանության ոչ մի նշան ցույց չի տալիս: Եթե նավում մարդ լիներ, մինչև հիմա դուրս եկած կլիներ: Ուրեմն մարդ չկա»:

Զգաց, թե ինչպես սիրտը ցավագին կծկվեց: Այն գիտակցությունը, որ ինքը բոլորովին իզուր է գնում դեպի մահը, դարձավ խեղդող ու մածուցիկ գունդ և խցանեց կոկորդը: Նա ցանկացավ ետ փախչել, սակայն ոտքերը շարունակում էին տանել դեպի հորատանցքը: Նա արդեն չափազանց շատ էր մոտեցել, և ետ դառնալն այլևս անօգուտ էր: Նա արդեն գոյություն չուներ…

Ինչպիսի՜ անխոհեմություն: Ո՞ւր է գնում, ինչո՞ւ է գնում: Մետաղ փրկելո՞ւ: Բայց դա անհեթեթություն է: Մարդկային կյանքով գնված մետաղ: Միայն խելագարը կարող է մտածել, թե մարդկային կյանքի դիմաց կարելի է վճարել մետաղով…

Նա չարացած կծեց ներքևի շրթունքը: Շուրթերը դողում էին: Մի պահ շուրթերի դողն անցավ ամբողջ մարմնին, և նա ինչպե՜ս սարսափեց իր արածից: Մի պահ նա կրկին ուզեց ետ դառնալ, փախչել, ցանկացավ ամբողջ Տիեզերքով մեկ գոռալ, որ տուն գնալ է ուզում:

Բայց դարձյալ շարունակեց առաջ քայլել…

«Թեկուզ և աստղանավում իսկապես մարդիկ լինեն: Ի՞նչ գործ ունեմ ես նրանց հետ: Ինչո՞ւ պետք է ես զոհվեմ հանուն նրանց»:

Հայրենիքում կսպասեն իրեն: Կմտածեն, որ մի քիչ ուշացել է և էլի կսպասեն: Հետո կտեսնեն, որ շատ



է ուշանում և կհասկանան, որ ինքն այլևս չկա: Նոր արշավախումբ կուղարկեն իրեն որոնելու և գործն ավարտելու համար…

Սակայն եթե ինքը չնկատեր այս աստղանավը, կկարողանար և՛ աշխատանքը վերջացնել, և՛ վերադառնալ տուն: Վերադառնա՜լ…

Հորատանցքի բերանի մոտ նա մի վերջին անգամ ետ նայեց՝ համարյա թշնամական հայացքով տնտղելով նավը: Այդ պահին, ասես հեքիաթում, նավի արծաթափայլ իրանից ինչ-որ մարմին պոկվեց ու դանդաղ իջավ գետնին: Նրանից հետո իջան ևս չորսը: Գետնին հասնելով, նրանք սկսեցին քայլել…

Մարդի՜կ…

Աստղանավում մարդիկ կան: Նրանք օտար աշխարհից են: Նավն առանց նավորդների չէ: Ինքն իր կյանքը մետաղի հետ չի փոխանակում: Հարկավոր է հասնել, անպայման հասնել:

Նա հանկարծ ուրախություն զգաց, ազատվեց անտեղի զոհվելու ափսոսանքից: Համարյա վազելով հորատանցք մտավ: Անհարթ հատակն ու պատերը խոչընդոտում էին նրա շարժումներին: Նա գլխով զարնըվեց վերևից դուրս պրծած քարաբեկորին: Անտանելի ցավը քիչ մնաց գետին տապալեր նրան: Նա մըթքում անիծեց ոտքերին, որոնք գոնե առաստաղը կարգին չէին հարթել:

Ձեռքը տարավ ճակատին: Թաց էր...

Սկսեց վազել խելագարի նման: Այլևս ոչ մի բանի վրա ուշադրություն չէր դարձնում, ո՛չ ցավող ձեռքերի, ո՛չ գլխի, ո՛չ Հելգերի փոքրածավալ հաշվիչի անհանգիստ չխկչխկոցի վրա...

Մի քանի րոպե անց, նա դանդաղ, ոտքերը հազիվհազ քարշ տալով, արդեն դուրս էր գալիս հորատանցքից: Նրա ճակատին ու հոնքերի մեջ փոշու հետ շաղախված արյունն էր լերդացել, դեմքը պատվել էր քրտինքի խոշոր կաթիլներով: Արյունոտ ձեռքերում բռնել էր ուրանի կտորները, որոնց ներկայությունից անհանգստացած Հելգերի հավատարիմ հաշվիչն անդադար աղմկում էր մարդուն սպառնացող մահացու վտանգի մասին: Չնայած սարսափելի տեսքին ու հոգեկան ուժերի անհավատալի լարմանը, նրա դեմքին մոտալուտ մահվան նկատմամբ անսքող հեգնանք էր թառել և հաղթողի հպարտ բերկրանք: Եվ միայն աչքերի խորքում էր թաքնվել այն ամբողջ կորստի կըսկիծը, որ կրել էր նա, միայն աչքերն էին ցավագին տառապանքով ագահորեն դիտում շրջապատը...

Նկատելով օտարաստղացիներին, նա մեղավոր ժպտաց, ցանկացավ ինչ-որ բան ասել, ողջունել նրանց, սակայն հոգնածությունից ու ջղերի սաստիկ լարումից երերաց տեղում, գլուխը պտտվեց, աչքերի առջև սև ու սպիտակ օղակներ հայտնվեցին: Նա դանդաղ ծնկեց, ապա բերանքսիվայր ընկավ գետնին:

Համենայն դեպս ինքը փրկեց նրանց, այդ բոլորովին անծանոթ մարդկանց, որոնց կարող էր նույնիսկ չտեսնելու տալ...

Միայն ափսոս, որ ինքն այլևս երբեք չի տեսնի իր տունը: Երբեք: Եվ իր համար արդեն ոչինչ գոյություն չունի, ամեն ինչ վերջացած է:

Ափսո՛ս...

Իսկ հերթապահությունն այդ օրը պետք է վերջանար, դա վերջին օրն էր: Վերջի՛նը...



# ԵՐԳԻԾԱԿԱՆ ՄԱՆՐԱՊԱՏՈՒՄՆԵՐ

## (ՆՄՈՒՇՆԵՐ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԲԱՆԱՀՅՈՒՍՈՒԹՅՈՒՆԻՑ)

### ՍԱԶԻ ՁԱՅՆԸ



*Մի գող գիշերը խարտոցով կտրում էր մեկի դռան կողպեքը: Մի անցորդ տեսնելով այդ, մոտեցավ նրան և ասաց.*

*— Ի՞նչ ես անում այստեղ, կարծես ինչ-որ գործով ես զբաղված:*

*Գողն ասաց.*

*— Այո՛, սազ եմ նվագում:*

*Անցորդն ասաց.*

*— Այդ ի՞նչ տեսակ սազ է, որ ձայն չունի:*

*Գողը պատասխանեց.*

*— Այս սազի ձայնը վաղը կիմանաս:*

### ԽԵԼՔԸ ՉԻ ԿՏՐԻ



*Մի գյուղացի բռնում է այգու գողին: Մի լավ ծեծում է, ոտները կապում, թողնում է այգում, ինքը գնում է գյուղապետի մոտ, գանգատվելու:*

*— Գյուղապետն ապրած կենա, այգու գողին բռնել եմ:*

*— Ո՞ւր է:*

*— Ոտները կապել եմ, թողել այգում:*

*— Հե՛ր օրհնած, ձեռքերով կըքանդի, կփախչի:*

*— Որ իմ խելքը չի կտրել՝ ձեռքերը բաց եմ թողել, իրենն էլ չի կտրի, որ ոտները արձակի... Չէ՛, մեր գյուղացի է, խելքը չի կտրի:*

### ԳՈՂԻ ՎԿԱՆԵՐԸ

*Մեկին բռնել և գողության մեղադրանքով դատում էին: Վկաները կային, որոնք տեսել էին և հաստատում էին, որ գողացել է: Բայց մեղադրվողը համառում էր, պնդում, որ ինքը չի գողացել:*



*— Իզուր ես համառում,— ասում է դատավորը,— խոստովանիր պրծիր. չէ ասելով բան չի դուրս գա: Վեց վկա կա, նրանք տեսել են:*

*— Վեց հոգի՞,— բացականչեց գողը,— դուք վեց հոգի վկա ունեք, որ տեսել են ինձ գողանալիս, ուզո՞ւմ եք, ես էլ հարյուր վեց հոգի վկա բերեմ, որ չեն տեսել:*

## ԴՐՈՒԺԻՆՆԵՐՈՒՄ ԵՎ ԶՈՒՆԱՆԵՐՈՒՄ



## ՄՇԱԿՈՒՅԹԻ ՏՈՆ

Միջագետքի Եդեսիա քաղաքից, 406 թվականին, հայոց նորաստեղծ այբուբենն էր բերում Մեսրոպ Մաշտոցը։ Նրան ու իր աշակերտներին Վաղարշապատի մոտ դիմավորելու եկան Վռամշապուհ թագավորը, Սահակ Պարթև կաթողիկոսը, նախարարները, բազմությունը։ Երգով ու նվագով, ցնծության աղաղակներով, Ռահ գետի ափից նրանց ուղեկցեցին մինչև մայրաքաղաք։ Ասես թե հաղթանակած զորավարն էր վերադառնում մարտադաշտից։ Բայց մի՞թե առավել մեծ սխրանք չէր Մաշտոցի գյուտը։ Չէ՞ որ այբուբենից էր սկսվելու նոր դարաշրջանը հայ մշակույթի պատմության մեջ, ծնունդ էր առնելու հայալեզու դպրոցը, հայ գրականությունը, պատմագրությունը, փիլիսոփայությունը...

Գրի գյուտը մշակութայինից բացի, ուներ նաև ազգային-քաղաքական բացառիկ դեր։ 387 թվականից, երբ Հայաստանը բաժանվել էր երկու թշնամի տերությունների՝ Բյուզանդիայի ու Պարսկաստանի միջև և բյուզանդական մասում արդեն վերացվել էր հայոց թագավորությունը, հայ ժողովուրդը կանգնած էր դժվարին մի խնդրի առջև։ Կրոնի պաշտոնական լեզուն հունարենն էր բյուզանդական մասում, և ասորերենը՝ պարսկականում, իսկ հայոց եկեղեցին, որն այն ժամանակ նշանակալից դեր էր խաղում ազգի պահպանման գործում, ձգտում էր անկախ լինել թե՛ մեկից, թե՛ մյուսից։ Մինչդեռ արարողությունները կատարվում էին օտար լեզուներով, իսկ ժողովրդի մի մասը քրիստոնյա էր, մյուսը՝ հեթանոս։ Պարսից զրադաշտական կրոնն էլ մյուս կողմից էր սպառնում կրոնափոխությամբ։ Ավելացնենք և այն, որ հայ երիտասարդները կրթություն ստանալու համար ստիպված էին մեծ ծախսերի ու դժվարությունների գնով մեկնել Բյուզանդիայի կամ Ասորիքի քաղաքները։ Այսպես ուրեմն, ինչ անկարող էր անել հայոց տկարացած սուրը, այժմ Մաշտոցի հնարած 36-տառերն էին անելու։

Եվ ահա, ունենալով սեփական այբուբենը, Մ. Մաշտոցը, Ս. Պարթևն ու նրանց աշակերտներ՝ Եզնիկը, Ղևոնդը, Կորյունը, Հովսեփը, հետագայում՝ Խորենացին, Փարպեցին և մյուսները, իրենց գործունեությունն սկսեցին նախ և առաջ թարգմանություններից։ Կազմվեց նաև առաջին այբբենարանը, բացվեցին հայկական դպրոցներ։ Դրանից հետո





## ԲԱԴԻ ՀԱՄՈԶՄՈՒՆՔԸ

*ՎԱՐԱԶԴԱՏ ԲԱԳՐԵՎԱՆԴՑԻ*

Լուր բերեց բադին
Մի օր արտույտը.
— Վարար գետի մեջ
Խեղդվեց քո ճուտը։—
Բադը ծիծաղեց,
Թե՝ չեմ հավատում,
Եթե իմ ճուտն է,
Չի՛ խեղդվի գետում։

*Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ*

## ԼՈՒՈՒԹՅՈՒՆ

*ՍՎԵՏԼԱՆԱ ԱԲԱՋՅԱՆ*

Լռությունն հոգնած թևերն է փռել
Աշխարհի վրա, քարի պես լռել...
Լռության գրկում կան խամրած գույներ,
Թափված տերևներ, հանգած հրդեհներ,
Մանկան աչիկներ համբույրով փակված,
Բույրը քնաքեր նրազող ծաղկանց։
. . . . . . . . . . . .
Ես շատ եմ սիրում պահը լռության,
Պահը երջանիկ այն անդորրության,
Երբ խորհրդավոր նրա մեծ գրկում
Ամեն մի գաղտնիք թվում է մաքուր։



Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

սկզբնավորվեց հայ ինքնուրույն մատենագրությունը: Գրերի գյուտից մոտ քառասուն տարի անց, Կորյունի ձեռքով գրվեց հայերեն առաջին պատմագիրքը, որտեղ երախտագետ աշակերտը խորին ակնածանքով պատմեց իր ուսուցիչ Մ. Մաշտոցի ու նրա կատարած գործի մասին:

Անցան տարինե՜ր, դարե՜ր: Ժամանակի հետ ոչ միայն չխամրեց մեր առաջին ուսուցիչների, թարգմանիչների փառքը, այլև առավել գիտակցվեց ու գնահատվեց հետագա սերունդների կողմից նրանց գործի նշանակությունը, նրանց հատուկ օր հատկացվեց տոնացույցի մեջ, և ահա 16 դար է, ինչ ամեն տարի հոկտեմբերին հայ ժողովուրդը նշում է նրանց հիշատակի օրը:

Այդ տոնի առթիվ Երևանի Ն. Զարյանի անվան դպրոցը հանդես է գալիս մի լավ նախաձեռնությամբ: Ամեն տարի հոկտեմբերին հայտարարվում է «Մեսրոպյան մրցույթ». շարադրություն՝ բարձր դասարաններում և թելադրություն՝ տարրականում: Մրցանակ շահած աշակերտը ստանում է «Մեսրոպյան մրցույթի» դիպլոմ և կրծքանշան: Ինչպիսի՜ տոնական եռուզեռի մեջ է լինում դպրոցը մրցանակների հանձնման օրը: Հանդեսին մասնակցում են անվանի գրողներ, լեզվաբաններ, գիտության և արվեստի գործիչներ:

Թարգմանչաց օրը յուրովի են նշում Երևանի Ստ. Զորյանի անվան դպրոցի աշակերտները: Այս տարի նրանք գրական-երաժշտական ընդարձակ ծրագրով հանդես եկան արդեն ոչ թե իրենց դպրոցում, այլ՝ Երևանի 26 կոմիսարների անվան շրջանի պիոներ-պալատում, շրջանի աշակերտության առաջ:

ՀԱՄՈ ՀԱՐՅԱՆ

# ՉՈՒԿՈՏԿԱՅՈՒՄ ՊԱԼԱՏ Է ԿԱՌՈՒՑՎՈՒՄ

Անասելի քամիների, սառնամանիքների ու ձյունամրրիկների երկիր է Չուկոտկան, որին և Վրանգելի կղզի են անվանում, և՛ քաղաք Անադիր, և՛ Խաչի ծոց, և՛ Դեժնևի հրվանդան: Դա մեր հայրենիքի ամենահեռավոր ծայրամասն է հյուսիսում:

Չուկոտկայում ապրում են խիզախ ու համարձակ մարդիկ. հեշտ չէ տունդրայի տեր լինելը: Նրանք



սուրում են շնասահնակներով ու հսկայական ամենագնացներով, եղջերուներ են արածեցնում ու օգտակար հանածոներ հայտնաբերում, ատոմային էլեկտրակայաններ են կառուցում, բևեռային աղվեսներ որսալու համար թակարդներ լարում և գետաբերաններից ոսկի արդյունահանում:

Չուկոտցիները Անադիր քաղաքում պիոներների և դպրոցականների պալատ են կառուցում: Այն կառուցվում է քո դրամով, ամենայն հավանականությամբ քո ջոկատն էլ է մասնակցել «Չուկոտկա» օպերացիային:

Ե՛վ մեզ, և՛ քեզ հետաքրքիր է իմանալ, թե ինչպես է կառուցվում պալատը: Լրագրող Օլեգ Տիխոմիրովը հանդիպում է ունեցել Չուկոտկայի օկրուգի կուսկոմի առաջին քարտուղար **Գենադի Նիկոլաևիչ Կիսելևի** հետ, և նրանց միջև հետևյալ խոսակցությունն է տեղի ունեցել:

### ԻՆՉՊԻՍԻ՞ ԴԺՎԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՆԴԻՊԵՑԻՆ ՊԱԼԱՏԻ ՇԻՆԱՐԱՐՆԵՐԸ

Մեր քաղաքը հավերժական սառցահողի վրա է կառուցված: Կառուցվող յուրաքանչյուր շենքի ամրությունը ապահովելու համար երկաթբետոնե սյուներ են խփում հողի մեջ և նրանց վրա բարձրացնում շենքը:

Պալատի կառուցման տեղում հողը շատ ամուր էր՝ ժայռոտ, ստիպված էին հորատել՝ հաճախակի փոխելով հորատիչները: Եվ այդ ամենը կատարվում էր անասելի քամու և 30 աստիճան սառնամանիքի պայմաններում:

1972 թվականի փետրվարի 12-ին, երբ պալատի առաջին սյունն էինք խփում, սարսափելի ձնաբուք ու քամի էր, բայց պիոներները չնստեցին տներում. թմբուկներով, շեփորներով ու դրոշով նրանք շինարարության հրապարակ եկան: Վերջին սյունը (իսկ դրանց թիվը 236 է) խփեցին Արտեկում պիոներների համամիութենական 5-րդ հավաքից առաջ: Եվ դա շինարարների նվերն էր հավաքին: Պալատի հիմքը Մագադանի ուսանողական շինարարական բրիգադի անդամները շարեցին:

Մինչ այդ, Նովոսիբիրսկում «արտահերթ» պատրաստում էին հիմնակմախքի մետաղե կառուցվածքը, Բրատսկում երկաթբետոնե շինվածքները, որոնցով այժմ կառուցվում է պալատը: Այդ ամենի համար երախտապարտ ենք Նովոսիբիրսկի և Բրատսկի աշխատավորներին:

### ԻՆՉՊԵ՞Ս ԷԻՆ ԲԵՌՆԵՐԸ ՀԱՍՑՆՈՒՄ ՉՈՒԿՈՏԿԱ

Ամենադժվարը դա է: Մեզ մոտ՝ հյուսիսում երկաթգծեր չկան: Իսկ ինքնաթիռով այդքան հսկայական բեռներ անհնար է փոխադրել: Միակ հնարավոր միջոցը ծովով փոխադրելն է, բայց նավագնացությունն էլ մեզ մոտ շատ կարճ ժամանակ է ընդգրկում՝ հուլիսից մինչև սեպտեմբերը, որից հետո դադարում է՝ ջրի ալեկոծության ու սառցակալման պատճառով: Մի խոսքով, օրերը հաշված են:

Բրատսկից և Նովոսիբիրսկից բեռները ուղարկում էին Վլադիվոստոկ, իսկ այնտեղից ջերմանավով՝ Անադիր: Օգոստոսի վերջն էր, հացահատիկի նոր բերքը տեղափոխելու ամենաեռուն շրջանը, բայց ճանապարհների հաղորդակցության մինիստրությունը՝ այնուամենայնիվ «պիոներական» բեռների համար 100 վագոն հատկացրեց, իսկ երկաթուղայինները «կանաչ ճանապարհ» տվեցին նրանց: Հեռավորարևելյան նավագնացությունը մեր բեռները արտահերթ բարձեց «Բու-





խարա» օվկիանոսային նավը: Ջերմանավը Անադիր հասավ նավագնացությունը ավարտվելուց հետո: Եթե նա ժամանակին չըհասներ, ապա պալատի կառուցումը շատ կուշանար:

Մենք միշտ էլ զգում ենք ողջ երկրի ուշադրությունը, օգնությունն ու հոգատար վերաբերմունքը:

## Ե՞ՐԲ ՊԱՏՐԱՍՏ ԿԼԻՆԻ ՊԱԼԱՏԸ

1974 թվականին, ինչպես որ նախատեսված է պլանով: Կառույցի հիմնական կմախքը գրեթե պատրաստ է: Աշխատանքը շատ ծանր է, իսկ Չուկոտկայում դա առաջին կառույցն է, որ լոդավազան ունի:

Շինարարները որոշեցին երեք հերթափոխով աշխատել, և այժմ կառույցում աշխատանքը ոչ մի ... չի դադարում: Շուտով կըսկըսվեն նաև մյուս աշխատանքները, որոնց համար մրցություն է անցկացվում ծեփագործների, ներկարարների և հյուսների միջև:

## ՉՈՒԿՈՏԿԱՅԻ ՊԻՈՆԵՐ-ՊԱԼԱՏԸ ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ԽՈՐՀՐԴԱՆԻՇ Է: ԻՆՉՈ՞ՒՄ Է ԱՐՏԱՀԱՅՏՎՈՒՄ ԱՅԴ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆԸ

Տեսեք, թե ինչ է ստացվում. նախագծի հեղինակ, գլխավոր ճարտարապետ Անտոնինա Միխեն և գլխավոր ինժեներ Միքայել Գալախովը Մոսկվայից են: Հիմնական շինանյութերը Սիբիրի գործարաններն են արտադրել: Պալատի մուտքը զարդարող գեղարվեստական ձևավորումը Էստոնիայում է պատրաստվում: Իսկ գունավոր ապակիներն ու ապակենկարները բերվելու են Բելոռուսիայից:

Նվերներով ծանրոցներ և նամակներ չուկոտցի երեխաները ստանում են միութենական բոլոր հանրապետություններից: Բոլոր նվերները՝ գրքեր, իրենց երկրների մասին պատմող ալբոմներ ու լուսանկարներ, կրծքանշաններ, հուշանվերներ ու այլ իրեր պահպանվում են Չուկոտկայի տարբեր դպրոցներում: Անադիրի պիոներների տունը բոլորը տեղավորել չի կարող, սրանք առայժմ պահվում են առանձին սենյակում: Օկրուգային մշակույթի տանը նվերների ցուցահանդես կազմակերպվեց, և բոլորը տեսան, թե որքան շատ բարեկամներ ունենք: «Ղազախստանի արվեստը» ալբոմը, «Լատիշուհին» փորագրանկարը, ուկրաինական ազգային տարազով տիկնիկը, կիրգիզական «Բարեկամություն» գորգը և հարյուրավոր այլ նվերներ մեծ հաճույք ու հրճվանք են պատճառում մեզ: Իսկ նամակներում անսպառ հետաքրքրություն կա Հեռավոր Հյուսիսի նկատմամբ և ցանկություն՝ ավելին իմանալ Չուկոտկայի պիոներների առօրյայի մասին:

Ամեն տարի մեր չուկոտցի երեխաները տարբեր հանրապետություններից, մարզերից ու երկրամասերից պիոներական ճամբարներում հանգստանալու հրավերներ են ստանում և ամռանը ցրվում երկրով մեկ: Այժմ մեր պիոներները իրենց բարեկամներին գրում են պալատի շինարարության մասին, ուղարկում կառույցի նկարները:

## ՉՈՒԿՈՏԿԱՅԻ ԵՐԵԽԱՆԵՐԸ ՕԳՆՈ՞ՒՄ ԵՆ ՊԱԼԱՏԻ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆԸ

Իհարկե, օգնում են: Վերջին երկու տարիներին նրանք շինարարության հաշվին 1000 ռուբլի դրամ են փոխանցել: Այդ գումարը նրանք վաստակել են պահեստներում բանջարեղեն ու մրգեր տեսակավորելով, թղթի մակուլատուրա ու մետաղի ջարդոն հավաքելով, դպրոցական կահույք վերանորոգելով, համերգներ տալով, հովիվներին օգնելով և կենդանաբուծական ֆաբրիկայում աշխատելով:

Կառույցի վրա առայժմ նրանք ոչինչ չունեն անելու, իսկ երբ վերջնական աշխատանքները սկսվեն, երեխաների օգնության կարիքը անպայման կզգացվի:

## Ի՞ՆՉ ՆՈՐ ԲԱՆ ԿՏԱ ՊԱԼԱՏԸ ՉՈՒԿՈՏԿԱՅԻ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻՆ

Նախ հնարավորություն կըստեղծվի մի տեղ հավաքվել, խորհըրդակցել: Հետո պալատում հաճախակի նկարների ցուցահանդես կբացվի, ինքնագործունեության համերգներ կտրվեն: Դահլիճը մինչև 220 մարդ կարող է տեղավորել:

Տարվա ինն ամիսներին մեր երեխաները մուշտակ են հագնում, ամառն էլ է ցուրտ լինում: Այնպես որ լողալը բացառված է, չուկոտցի երեխաները լողալ




## ՔՆԻ ԴԵՏԵԿՏՈՐ

Չեխոսլովակյան ինժեներները մի սարք են հնարել, որը արթնացնում է աշխատանքի ժամանակ ննջող մարդուն: Սարքը ամրացվում է ականջների շրջանակներին: Երբ արտևանունքները ավելի երկար են մնում փակված, քան սովորական թարթելու ժամանակ, հատուկ հարմարանքը միացնում է զարթուցիչը: Կոնստրուկտորները ենթադրում են, որ իրենց նորարարությունից կարող են օգտվել միապաղաղ աշխատանքով զբաղվող մարդիկ, հատկապես գիշերային հեռախոսավարուհիները, պահակները, վերահսկող պուլտերի մոտ աշխատողները, հերթապահները և ուրիշներ:

### ԱՐՀԵՍՏԱԿԱՆ ԱՏԱՄՆԵՐ... ԱՌՅՈՒԾԻՆ

Միլանի կրկեսի հանդիսատեսի սիրելի առյուծ Ջումբոն իր խաղընկերոջ հետ կռվելիս կորցրեց ծնոտի երկու ժանիքները: Կրկեսի դիրեկցիան չցանկանալով հրաժարվել առյուծից, ընդունեց դոկտոր Ջորջ Գնալդուշշիի առաջարկը՝ փորձել առյուծին արհեստական ժանիքներ տեղադրել: Դոկտորը բարեհաջող ավարտեց վիրահատումը:





### ԵՏ՝ ԴԵՊԻ ԱՂԱՎՆԻՆԵՐԻ ՓՈՍՏԸ

*Լոնդոնյան մի քանի թերթեր և ամսագրեր մեր օրերում ստիպված են դիմել թղթակիցների նյութերը աղավնիների միջոցով հատուկ պայուսակներով ստանալու եղանակին:*

*Բանը նրանում է, որ թարմ նյութը, ինֆորմացիան, նորությունը կամ նկարահանված ժապավենը աղավնին ավելի շուտ է հասցնում խմբագրություն, քան թղթակիցը մեքենայով: Եվ դա այն պատճառով, որ փողոցային խցանումները շատ երկար ժամանակով արգելակում են տրանսպորտի երթևեկությունը:*

### ՀԵՌԱԽՈՍՆԵՐԻ ԹԱՆԳԱՐԱՆ

Լեհական Ռադոմե քաղաքի հեռախոսային ապարատների ֆաբրիկան բացել է հեռախոսների թանգարան, որտեղ հավաքված են հնում օգտագործված ապարատներ: Ամենահին հեռախոսը, որը կարելի է տեսնել թանգարանում, գրեթե հարյուր տարեկան է և պատրաստվել է 1876 թվականին: Վերջինս «հասակակից» է այն ապարատին, որով նրա գյուտարար Գեորգ Բելլը 1876 թվականի հոկտեմբերի 9-ին, պատմության մեջ առաջին անգամ, խոսեց երեք կիլոմետր հեռավորության վրա գտնվող մարդու հետ:



*Նկ. ԱՐՄԵՆ ՍԱՎԱՅԱՆԻ*

---

չգիտեն: Պալատում եռաշարք լոդավազան է լինելու: Ես հավատում եմ, որ Չուկոտկան էլ լողի իր դափնեկիրները կունենա:

Փողոցներում անասելի սառնամանիք ու սուր քամի կլինի, իսկ լուսավոր պալատի հարկաբաժիններում՝ տաքություն, որովհետև ոչ մի սառնամանիք ի վիճակի չի լինի թափանցել եռաշարք ապակիներով պատուհաններից ու պատերից: Ինքնաթիռի ու նավի մոդելներ պատրաստիր, ծաղիկներ աճեցրու և որքան ուզում ես՝ երգիր ու պարիր:

Մեզ մոտ՝ Անադիրում ո՛չ ծառ կա, ո՛չ թուփ: Չեն դիմանում անդադար փչող քամուն ու ձյունամրրիկին: Իսկ պալատի առաջին հարկում ձմեռային այգի կաճեցնենք: Այնտեղ ջերմությունը գրեթե նույնը կլինի, ինչ դրսում, միայն թե ծառերը քամուց հուսալիորեն կպաշտպանվեն ապակյա պատերով: Ցրտադիմացկուն ծառերը այստեղ լավ կաճեն, երեխաները կզբոսնեն այգում, առանց վախենալու դեմքը ցրտահարելուց:

Պալատի տեղը շատ հարմար է ընտրված: Մի տարի հետո ով Անադիր գա, առաջինը չորսհարկանի սպիտակ շենքը կտեսնի՝ մեր պիոներների պալատը:

*Թարգմ. ՎԱՀԱՆ ՄԽԱԿՅԱՆԻ*

## ԼՈՂԱՓԻ ՊԱՀՊԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ



Ինչպես հայտնի է, դելֆինները մարդկանց նկատմամբ ջերմությամբ են տրամադրված: Դրան հակառակ, շնաձկները մարդկանց «ուսումնասիրում» են որպես իրենց ապագա զոհերի:

Հայտնի է նաև, որ դելֆինները սարսափելի ատում են ծովային գիշատիչներին: Այս հանգամանքը Ֆլորիդայի մի խումբ կենդանաբանների հուշեց զբաղվել դելֆինների յուրահատուկ վարժեցումներով: Նրանք սովորեցրին դելֆիններին ջրասույզի հրամանով հարձակվել շնաձկան վրա: Արդյունքը շատ փայլուն եղավ, և դելֆիններն իրենց նոր առաջադրանքը կատարում էին մեծ հաճույքով:

Նրանք ոչ միայն քշում հեռացնում էին վտանգավոր ձկներին, այլև սպանում նրանց:

## ՕԳՏԱԿԱՐ ԴԵՂԱՀԱՏԵՐ ՔԱՂԱՔԱԲՆԱԿՆԵՐԻ ՀԱՄԱՐ



Ճապոնացի բժիշկների կարծիքով, աղմկաշատ ու մարդաշատ քաղաքների բնակիչներին, որոնք նաև հաճախակի ենթարկվում են տրանսպորտի ցնցումներին, օգտակար է խաղաղօվկիանոսյան մեդուզաներից պատրաստված դեղահատերը:

Ինչպես հայտնի է ,այդ թափանցիկ կենդանիների մարմնի 90 տոկոսը ջուր է: Բայց երբ չորացնում և մամլում են դեղակոճակների նման, ապա ստանում են վիտամինների ու մանր էլեմենտների խառնուրդ կամ այսպես կոչված ամինաթթու, որը նյարդային համակարգի վրա բարենպաստ ազդեցություն է թողնում:



# ՓՂԵՐԻ ԴՊՐՈՑ

Արևադարձային երկրներում, առանձնապես այնտեղ, ուր տեխնիկան սակավ է, գործում են փղերի դպրոցներ: Փղերը դպրոց են ընդունվում հինգ տարեկան հասակում և սովորում վեց տարի: Նրանք բաժանվում են խմբերի, և յուրաքանչյուր խումբ ունենում է դասամատյան: Փղին սովորաբար տալիս են այն լեռան կամ առվակի անունը, որի շրջակայքում բռնել են նրան:

Ուսումնական տարվա սկզբին աշակերտներին ծանոթացնում են ուսուցիչների՝ մախութների հետ, և նրանք դառնում են մտերիմներ: Վեց տարվա ընթացքում, բացի մախութից, ոչ ոք իրավունք չունի փղին կերակրելու: Նա ամեն օր լողացնում է փղին: Աստիճանաբար սկսում է լեզվի դասերը. «աշակերտը» սովորում է «շռունգ» և «կով» հրամանները: Առաջինը նշանակում է. «Առջևի ոտքերիդ վրա ծընկի՛ իջիր, որպեսզի մարդը նստի քեզ վրա», իսկ երկրորդը՝ բարձրացի՛ր: Ընդհանրապես, լեզվի ուսուցմանը մեծ ուշադրություն է դարձվում. երկրորդ տարուց հետո փիղն իմանում է (չնայած պասսիվ կերպով) մի շարք բառեր. «գնա՛», «կանգնի՛ր», «կողքի՛ց մոտեցիր»: Մարզական պատրաստությունը սկսվում է ավելի ուշ: Փղերը ծանրություններ են բարձրացնում, տեղից-տեղ տեղափոխում, սովորում են «ծառեր արմատախիլ անելու» և «թփեր կոխկըրտելու» առարկաները:

Ուսման երկրորդ տարում, կշռի և ուժի համեմատ, «աշակերտներին» բաժանում են ըստ դասարանների: Մի մասը սովորում է ծառեր արմատախիլ անելու արվեստը, մյուս մասը՝ ծանրություններ բարձրացնելու: Մեկ-երկու փիղ էլ, որոնք թույլ են, պատրաստվում են հատուկ գործունեության՝ բուդդայական տաճարներում աշխատելու համար: Նրանց աշխատանքը դժվար չէ, բայց շատ պատասխանատու է. պետք է հանդիսավոր արարողության ժամանակ երաժշտության հնչյունների տակ համաչափ քայլեն, իսկ տաճարից Բուդդայի «արյունը» դուրս բերելու ժամանակ՝ կնճիթները վերև բարձրացնեն և ուրախ ձայներ արձակեն:

Ոչինչ այնքան չի խթանում փղերի աշխատանքը, որքան երաժշտությունը: Վատ երաժշտությունը կատաղության է հասցնում փղին. նա ընդհատում է աշխատանքը, իր վրայից նետում նվագող մախութին և կարող է նույնիսկ սպանել: Այդ պատճառով էլ մախութ ընտրելիս հաշվի են առնում նաև երաժշտական կարողությունը:

Փղերի դպրոցում երկու թվանշան կա՝ «հինգ» և «երկու»: Գերազանց ստացող աշակերտին տալիս են մի խուրձ շաքարեղեգ, իսկ վատ սովորողին, ընդհակառակը, ոչինչ չեն տալիս: Ուսման վերջում փղերը հարստացնում են իրենց բառապաշարը նոր հրամաններով՝ «ձա՛խ շուռ տուր», «մոտեցիր աջի՛ց», «ծնկի՛ր և կնճիթով վերցրո՛ւ գերանը»:

Վեց տարի հետո դպրոցը շրջանավարտներ է տալիս: Տասնմեկամյա, լավ ուսում առած փիղը, կարելի է ասել՝ «ոսկե կնճիթի վարպետը», պատրաստ է աշխատելու: Նա լուռ է, համբերատար, պասսիվորեն տիրապետում է լեզվի և արտակարգ աշխատասեր է:

# ՈՒՇԱԴԻՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՄՐՑՈՒՅԹ

(ԵՐԿՐՈՐԴ ՓՈՒԼ)

*1. «Բայց ահա հոկեյի մրցությունն ավարտվել է...»*

*Ավարտեք նախադասությունը և գրեք, թե ո՞ւմ մասին է պատմում հեղինակը:*

*3. «Քիթը մոտեցրեց, սկսեց կարդալ ծովածոցերի, նեղուցների, հրվանդանների անունները»:*

*Ի՞նչ է հաջորդում այս նախադասությանը, ինչո՞վ է ավարտվում միջադեպը:*

*3. «Փլատակների տակ մնացին վերջին անասունները ու աղքատիկ կահկարասիները»:*

*Ո՞ր նյութից է վերցրած այս նախադասությունը, և ինչի՞ մասին է պատմում հեղինակը:*

*4. «Սովորաբար անձրևից հետո համբիկը դառնում է «բյուրեղապակյա»:*

*Նախադասության ո՞ր բառն է փոխված, գրեք ճիշտը:*

*Պատասխանները պետք է ուղարկել մինչև 1974 թ. փետրվարի 25-ը:*

*Փորձեցեք այս պատկերը բաժանել վեց իրար հավասար ու նման մասերի:*

ԳԵՎՈՐԳ ԳԱՍՊԱՐՅԱՆ

## ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐ «ՊԻՈՆԵՐ» № 10

*«ՏԱՌԵՐԸ՝ ՔԻՉ, ԲԱՌԵՐԸ՝ ՇԱՏ»*

Ա

1—5 — Գյոթե
2—4 — Յոթ
4—8 — Թենիս
5—10 — Ենիսեյ
8—13 — Սեյրան
12—15 — «Անուշ»
14—19 — Ուշակով
17—19 — Կով
17—22 — Կովկաս
21—24 — Ասիա
8—14 — Ազարյան
9—14 — Զարյան
13—15 — Անի
16—17 — Իլի
16—22 — Լիբանան
18—22 — Բանան
21—24 — Անագ
15—20 — Նանսեն
18—21 — Սենա
20—24 — Նավակ

Բ

1—6 — Նյուտոն
4—8 — Տոննա
7—11 — Նազար

Գ

1—4 — «Սոմա»
3—8 — Մարշակ
4—8 — Արշակ
8—12 — Կապրի
9—13 — Ապրել
13—16 — Լենա

Դ

1—5 — Շչորս
2—5 — Չորս
5—10 — Սոմալի
7—10 — Մալի
8—10 — Ալի
8—13 — Ալիգեր
11—16 — Գերցեն
14—20 — Ցենտներ
18—22 — Ներիս
22—24 — Սոլ

Լույս է տեսնում 1923 թվականից:

# ՊԻՈՆԵՐ

№ 1 Հունվար 1974 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝

*նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ*

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Ի., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

**«Пионер» на армянском языке. Орган ЦК ЛКСМ Армении и республиканского совета пионерской организации им. В. И. Ленина.** Адрес редакции: 375200, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15:*

*Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:*

ՎՖ 04009: Պատվեր՝ 1616: Տպաքանակ՝ 80400: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 8.1.1974 թ.

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան—9, Տերյան փ. № 91:

ԳԻՆԸ՝ 10 Կ.   ԻՆԴԵՔՍ՝ 77806




ՓԱՐԹԱՄՅԱՆ ՍԱՄՎԵԼ
Երևան, 13 տ.



ՀԱՅԿՅԱՆ ՄՆԱՑԱԿԱՆ
Նաիրիի շրջան, Զովունի սովխոզ, 13 տ.

ՖԵՐՄԱՆՅԱՆ ԱՐԱ
Երևան, 12 տ.





ՄՆԳՈՅԱՆ ՍԱՄՎԵԼ
Ախալքալակ, 10 տ.